// ԷՋՄԻԱԾԻՆ

ԿՐՕՆԱ—ԲԱՐՈՅԱԿԱՆ ԱՄՍԱԹԵՐԹ

ԱՌԱՋԻՆ ՏԱՐԻ, ԹԻՒ 8 — ՖՐԷԶՆՕ, ՔԱԼ. ՕԳՈՍՏՈՍ, 1918 — ՏԱՍԸ ՍԷՆԹ

## «ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՓՍԱԿԻ»ԷՆ ՑԵՏՈՅ

### փոխան Զուարճութեան

---

Մահուան մը պարագային, յուղարկաւորութեան առեն, հանգուցեալին իբր վերջին յարգանքի ցոյց՝ փոխան ծաղկեպսակի՝ հանրային բարենպատակ հաստատութեան մը դրամական նուիրատուութիւն ընելու բարի սովորութիւնը բաւական հին է մեր մէջ: Պոլսոյ Ազգային Ս. Փրկիչ հիւանդանոցի հասոյթի գլխաւոր աղբիւրներէն մին էր ան: Փակագծի մէջ տեղն է ըսելու, որ ի նպաստ այս հիւանդանոցին ի վաճառ հանուած սիկարի թուղթը հոս դեռ գոյութիւն ունի եւ կը ծախուի Ամերիկահայոց մէջ: Որո՞նք են արդեօք այդ թուղթը պատրաստողները, երբ արդէն հիւանդանոցը գոյութիւն չունի այժմ: Ինչպէ՞ս կարելի է ներելի կըլլայ անոր անունով ապրանք չինել ու ծախել հասարակութեան:

«Փոխան ծաղկեպսակի»ն, ներկայ ազգային ամենադժբաղդ կացութեան միջոցին, ա՛լ աւելի շեշտուած ու կարեւորութիւն ստացած իրողութիւն մըն է Ամերիկահայ կեանքին մէջ եւ այդ անունով յանուն Հայ տառապանքին եղած նուիրատուութեանց գումարը աչքառու ըլլալ կը թուի: Ֆրէզնոյի մէջ Ս. Երրորդութիւն Եկեղեցիէն, առանց անոր՝ ննջեցեալ վերցնել հազուադէպ է: Արդարեւ գովելի է ասիկա եւ կ'արժէ գնահատել: Սակայն թերթին միւս երեսն ալ կարդանք:

Մենք շատ անգամ ականատես կըլլանք եւ երբեմն ալ Հայ թերթերու մէջ կը կարդանք որ կնունքի, նշանախօսութեան մը, հարսանիքի մը, անուան տարեդարձի մը առթիւ եղած հաւաքոյթներու մէջ այնպիսի մթնոլորտ մը կ'ըստեղծուի, որ մարդուս զզուանք միայն կը պատճառէ: Չեն չիկնիր նոյն իսկ թերթերուն մէջ գրելու թէ կերուխումը, պարը, այլովքն հանդերձ, շարունակուեցան մինչեւ լոյս, բաւական է որ եւսէն ալ յիշուած ըլլայ թէ «այս առթիւ չի մոռացան նաեւ կարօտեալները, ու հանգանակութիւն մը բացուելով այսչափ դրամ գոյացաւ» . . . : Ու փրկուեցան Հայ կարօտեալները . . . : Այդ հանգանակութեամբ կը կարծեն չքմեղացուցած ըլլալ ամբողջ գիշերուան մը շռայլութիւնները, արբեցութիւնները, թրքական անպարկեշտ խաղերը եւ յարակից բոլոր անճոռնիութիւնները:

Ընթերցո՛ղ, դու ինքդ դատէ, թէ այդ վիճակին մէջ մեր դժբաղդ կարօտեալներուն եղած նուիրատուութիւն մը որքան հաճելի կրնայ ըլլալ Աստուծոյ եւ մարդկան, նոյն ինքն կարօտեալին:

«Էջմիածին»ի միջոցաւ պարտականութիւն կը համարինք յիշեցնել մեր մերձաւոր ու հեռաւոր ժողովուրդին եւ ազդարարել ինչ որ շատ անգամ կրկնած ենք Եկեղեցւոյ բեմէն, որ ոչ միայն չափ դրուի այդ տեսակ յոռի բարքերուն, այլ եւ գէթ ժամանակի մը համար խսպառ տեղի չունենան անոնք. բարքեր, որոնց երեւոյթը խաղաղ ժամանակի մէջ անգամ ներելի չէ: Ինչպէս որ մահուան առթիւ «փոխան ծաղկեպսակի», այնպէս ալ ուրախութեան պահուն «փոխան զուարճութեան» դրամական նուիրատուութիւն ըրէք ազգային ծով կարիքներուն: Ազգային Միութիւնը յիշեցէք, Բարեգործականը ի մտի ունեցէք, հեռաւոր հաստատուող Հայ որբանոցները մի մոռնաք:

Հանգանակութեան համար հրաւիրեալներուն վրայ ծանրանալու չէ երբեք: Մենք այս թելադրութիւնը կընենք առ միայն հասկացողութեամբ որ ուրախութեան բուն տէրը ինք միայն ուտելիքի ու ըմպելիքի համար ընելիք ծախուց փոխարէն պատշաճ գումար մը տայ վերը յիշուած նպատակներէն միոյն, վասն զի ի դէպ է կրկնել որ Ամերիկեան պատերազմական խնայողական օրինաց դէմ խոշոր մեղանչում մըն է նաև այդ կարգի շռայլութիւնը: Իսկ հրաւիրեալները, որոնք խիստ սակաւաթիւ ըլլալու են, կարելի է պատուասիրել օշարակով կամ միրգով միայն: Ուրախութեան շարժառիթը ոչ թէ ըմպելիքը՝ այլ օրուան բուն դէպքը, կատարուած իրողութիւնը պէտք է ըլլայ:

Քրիստոնեայ մարդկութեան վայելուչ չէ, յղփանալ, արբենալ որ և է պատճառով. վիճակ մը որուն անասունները անգամ չեն ենթարկուիր: Մեր ամեն ուրախութեան մէջ մարդը մնալու է իր արժանաւոր դիրքին մէջ: Հոն երբեք խանգարելու չէ իրաց բնական ընթացքը, եղծանելու չէ կարգն ու կանոնը, ի նկատի ունենալու է զմեզ շրջապատող անմեղ փոքրիկներուն հոգեբանական կացութիւնը, որ ընդունակ է շուտով ազդուելու եւ իւրացնելու իր ամեն տեսածն ու լսածը:

Ժամանակը եւ առաւել հարկեցուցիչ և ստիպողական կը դարձնէ մեր թելադրութեանց արժէքն ու կարեւորութիւնը: Աւերակ հայրենիքի մը նժդեհ զաւակներն ենք մենք, կախուած, կոխոտուած, յօշոտուած ու մորթոտուած, մերկ ու անսուաղ, հեռաւոր արեւակէզ անապատները քշուած, ահաւորօրէն ցաւատանջ ցեղի մը մնացորդները ենք մենք: Յղփացումն ու արբեցումը բոլոր ատոնք մոռնալ և ուրանալ կ'ենթադրէ: Քաւ լիցի թէ մենք այս տողերով ուրախութիւնը կ'արգիլենք, զուարճութիւնը անպէտ ու վնասակար կը համարինք. ոչ բնաւ: բայց այդ ուրախութիւնը, պաշտօնական առիթներու մէջ մանաւանդ, ոչ թէ ուտելեաց առատութենէն, ոչ թէ ըմպելեաց սրուակներէն, այլ մարդու սրտէն բղխելու է, որուն մէջ կը փայլի թէ՛ Աստուծոյ փառքը, թէ պատիւը մարդուն, թէ մեծ ցաւը համազգային:

Ուստի որ և է տեսակ ուրախութեան առթիւ, մի՛ մոռնանք «Փոխան Զուարճութեանց»:

## ԻՆՉՊԷՍ ՊԷՏՔ Է ԿԱՏԱՐԵԼ

### Նշանտուքի Արարողութիւնը Ամերիկայի Հայոց

---

Նշանտուքը Հայոց մէջ կը կատարուի ո՛չ միայն ընկերային կամ ժողովրդական սովորութեանց համեմատ, այլ նաև կրօնական արարողութեամբ մը, որ վաւերական կը հռչակէ նշանտուքը:

Նշանտուքի ընկերային կամ ժողովրդական ձեւերը սկզբունքով նոյն են Հայոց մէջ: Իսկ գործադրութեան մէջ տիրող տարբերութիւնները վերագրելի են տեղական պայմաններու ու նշանուողներու վիճակին:

Նշանտուքի կրօնական արարողութիւնն ալ սկզբունքով նոյն է Հայոց մէջ, ամեն տեղ. այսինքն՝ հոգեւոր պաշտօնէային աղօթքն ու օրհնութիւնը պայման է նշանտուքը իբր վաւերական հռչակելու համար:

Բայց ո՞րն է այդ աղօթքին և օրհնութեան պաշտօնական կամ արարողական ձեւն և կերպը:

Առձեռն Մաշտոցներու մէջ Նշանօրհնէքի կանոնը կը պակսի, և առիկա շատ կարեւոր երեւոյթ մըն է. բայց կա՛յ Մայր Մաշտոցի մէջ կանոն մը, որ շատ հետաքրքրական է սկիզբը գրուած Ծանօթութեամբ կամ Հրահանգով. վասն զի այդ ցոյց կուտայ, թէ Հայոց մէջ ընդունուած սովորութեան համեմատ կարգադրուած է նշան տալու և օրհնելու կերպը:

Նախ այդ կանոնը տեսնենք, որ է

### ԿԱՆՈՆ ՆՇԱՆ ՏԱԼՈՅ ԵՒ ՕՐՀՆԵԼՈՅ

Գիտելի է զի Նշանն է սկիզբն Պսակին. զի զոր օրինակ, ծառն նախ ծաղկի և ապա պտղաբերի, նոյնպէս՝ փեսայն և Հարսն՝ նախ ծաղկին Նշանաւն և ապա պտղաբերին Պսակաւն:

Արդ՝ պարտ է Քահանային նախ քննել և ընտրել կանոնօք զփեսայն և զհարսն, զի մի՛ լինիցին հոգևոր կամ մարմնաւոր ազգակիցք՝ և մի՛ անհամաձայնք միմեանց. որպէս թէ կոյս ընդ այրւոյ և կամ մանուկընդ պառաւոյ: Այլ՝ լիցի փեսայն հնգետասան կամ երկոտասան ամաց և հարսն ԺԴ. կամ Ժ. ամաց:

Եւ նստեցուցանեն ի վերայ արոռոյ հանդէպ միմեանց, և ոչ ծածուկ հեթանոսաբար:

Եւ դիցեն ի վերայ սկտեղ առաջի փեսային զնշանսն, որք են մատանի, ապարանջան, զինդ և կարմիր շար և քօղ:

Մատանին եդեալ ի չորրորդ մատն (որ ունի զերակ սրտին), ցուցանէ, թէ հարսն սրտիւ հաւանեցաւ փեսային:



Ապարանջանն ի ձեռին՝ ցուցանէ, թէ ձեռօքն կապեցաւ ի հնազանդութիւն առն:

Գինդն ցուցանէ, թէ ականջօքն լուաւ և մըտօքն հաւանեցաւ:

Կարմիր շարն և Քօղն նշանակեն, թէ ճշմարտապէս հարսնացաւ մանկանն, որում նշանեցաւ:

Եւ առնու Քահանայն զօրհնութեան բաժակն ի ձեռին, և բացատրէ զմեծագոյն խորհուրդ նշանին, երէ ցուցանէ զկենսաբեր աւետիսն Գաբրիէլի, զոր ետ Սրբոյ Կուսին Մարիամու, որով յղացաւ զԲանն Աստուած:

Եւ ի վճարելն զբան մեկնութեան նշանին, ապա ասէ.

Շարական Ակ. խորհուրդ անճառ:

Այս շարականին կը հետևի ընթերցուածքներու շարք մը,

Առակաց Գրքէն
Երգ Երգոցէն
Ովսէէ Մարգարէէն,
Եսայի Մարգարէէն,
Գաղատացւոց Թղթէն,
Ղուկասու Աւետարանէն:

---

Ետքը աղօթք, կամ

«Յիսուս Քրիստոս Աստուած մեր ճշմարիտ, որ կամաւ Հօր,» են. և կամ

«Թագաւոր խաղաղութեան» են:

«Եւ ապա զմատանին և զապարանջանն դնէ ի ձեռսն, և զքօղն ձգէ ի գլուխն, և զօրհնեալ բաժակն արբուցանէ երկուցն՝ փեսային և հարսին:

Եւ յանաչառ դատաստանին Աստուծոյ՝ յարենէ նոցա անպարտ լինելոյ վասն՝ որպէս ի ժամ հարսանեացն, նոյնպէս և այժմ զգուշացուցանէ երկիւղիւ Տեառն կալ մնալ, ընթեռնելով զայս խրատ առաջի նոցա»:

Եւ կը տրուի ընդարձակ խրատական մը, որ շատ հետաքրքրական է, իր ոճով և արտայայտութեամբը:

Մայր Մաշտոցին տպագրիչները կը յայտարարեն, որ այս Խրատը և Նշանօրհնէքի կանոնը առած են «Բազմամեայ Մաշտոցէ» մը: Դիտել կուտան նաև, թէ այս ընդարձակ Նշանօրհնէքի կանոնին համառօտն է Մայր Մաշտոցի 25 և 26 երեսներուն վրայ տպուածը: Բայց այս համառօտ բնուածը, որ առձեռն Մաշտոցներու մէջ ալ կայ, Պսակի սկիզբն է, և ոևէ կապ չունի Նշանօրհնէքի հետ:

Թերևս Պսակին Առաջին մասը նշանակել ուզած ըլլան, 24 և 25 երեսներու վրա, որ ըստ Մաշտոցի պէտք է կատարել հարսին տունը, ձեռնադրութեամբ, շարականով, աղօթքով և բաժակի օրհնութեամբ:

Այս մասն ալ կայ առձեռն Մաշտոցներու մէջ, բայց ամենևին Նշանօրհնէքի չնմանիր, և շատ տեղ ալ այս մասը չկատարուիր:

Տարակոյս չկայ, որ հին և ընտիր ձեռագիր Մաշտոցներու ուսումնասիրութեամբ միայն կարելի է վերջնական կարծիք մը յայտնել Նշանօրհնէքի կանոնին վրայ :

Իսկ Մայր Մաշտոցի Կանոնը յառաջ բերի իբրև հետաքրքրական, ցոյց տալու համար թէ Նշան տալու և Նշան օրհնելու ձևերը փոխուած են, բայց սկզբունքը նոյն մնացեր է, ինչպէս որ կանխաւ դիտել տուի: Զոր օրինակ, Մայր Մաշտոցին մէջ տրուած Կանոնը, հայ Բնաշխարհին մէջ տեղ տեղ կը գործադրուէր, Քահանաներու ըմբռնման համեմատ: Նոյնպէս տրուելիք Նշաններն ալ (մատանի. և այլն) երբեմն նոյնութեամբ, և յաճախ առաւել կամ նուազ փոփոխութեամբ գործածուած են:

Իսկ սկզբունքի նոյնութիւնը սա է.

Ա. —Նշանուողները զիրար պէտք ճանչնան և պէտք հաւանին ազատ կամքով:

Բ.— Հարսնցուին նշան մը պէտք տրուի փեսային կողմէն: Այդ նշանը մատանի մըն է յաճախ, որ ընդունուած է նաև միջազգային սովորութեամբ:

—Գ.— Հոգևոր պաշտօնէին ներկայութիւնն ու աղօթքը պայման է նշանտուքի վաւերականութեան համար:

Արդ՝ փորձը ցոյց տուած է, որ շատ անգամ նշանտուքը կը խզուի և չեղեալ կը համարուի ոևէ պատճառաւ, մինչ ըստ եկեղեցական կանոններու նշանտուքը անխզելի է կամ կ'ենթադրուի որ անխզելի պէտք ըլլայ: Եւ որովհետև անխզելի ըլլալու պայմանը երաշխաւորուած չէ, այդ պատճառաւ Նշանօրհնէքի Կանոնը չկատարուիր: Դարձեալ՝ այս է պատճառը, որ առանց Նշանօրհնէքի, երկու կողմեր հաւանին և համաձայնին իրենց զաւակները ամուսնացնել ապագային, այս հաւանութիւնը կամ համաձայնութիւնը կ'անուանուի խօսքկապ. և եթէ նոյն իսկ նշան ալ տան, թէև նշանտուք կ'ըսուի, բայց ոչ թէ բառին կանոնագիտական իմաստով, որովհետև հոգևոր պաշտօնէական աղօթքով ու օրհնութեամբ չէ՛ վաւերացուած:

Նկատի առնելով այս բոլոր փորձերը և հաւա-

# ETCHMIADZIN

A RELIGIOUS MONTHLY PAPER

PUBLISHED BY

REV. V. V. KASPARIAN

P. O. Box 290 Fresno, Cal.

SUBSCRIPTION PRICE $1.00 PER YEAR

Entered at the postoffice at Fresno as second class mail matter

VOL I, NO. 8, AUG. 1918 PRICE 10 CENTS


նականութիւնները, խոհեմութիւն համարուած է նշանօրհնէքը չի կատարել Մայր Մաշտոցի Կանոնին համեմատ, և այս պատճառաւ ամեն տեղ իր սովորութիւնը ունի: Զոր օրինակ, Կ. Պոլսոյ մէջ, երբ երկու կողմերու համաձայնութեամբ որոշուած է պաշտօնապէս հռչակել նշանախօսութիւնը, ասոր պաշտօնական տեղն է Ազգային Պատրիարքարանը, ուր կամ Փոխանորդը կամ, ի հարկին, Պատրիարքը, խօսեցեալներու ներկայացուցիչներուն և ծխատէր քահանային ներկայութեամբ Նշանօրհնէքը կը կատարէ միայն աղօթքով մը (Պահպանիչով): Իսկ Պսակի օրը Հալաւօրնէքին կը միացնեն Նշանօրհնէքն ալ: Գաւառներու մէջ ալ ուր որ առաջնորդարան կայ, հոն կը կատարուի այս պաշտօնականութիւնը. իսկ ուրիշ տեղեր ծըխատէր քահանային կամ քահանային և երկու կողմանց ներկայացուցիչներուն ներկայութեամբ կը կատարուի Նշանօրհնէքը, պարզ Նշանտուքի ձևով:

Ամերիկայի Հայ գաղութը անշուշտ կը ներկայացնէ այլազան սովորութիւններ և ձևեր նշանտուքի խնդրին մէջ, որովհետև ամեն քաղաքացի իր տեղւոյն սովորոյթներուն վարժ է, իր տեղւոյն ձևերը գիտէ, և կը կարծէ, որ միայն իր գիտցածն է ուղիղը և վաւերականը:

Ցորչափ Ամերիկայի Հայոց յատուկ Կանոն մը չկայ– ըստ իս հարկ է նախընթաց փորձառութենէն օգտուիլ և անոնց ուղւոյն համեմատ կատարել Նշանօրհնէքը Հայաստանեայց Եկեղեցւոյ մէջ:

Իսկ եթէ երկու կողմերէ մէկուն կամ երկուքին միանգամայն fէյֆը այսպէս կուզէ կամ այնպէս, հիմնուելով իրենց երկրի տեղական սովորութիւններուն, այս պարագային, լաւ է և օրինաւոր է, որ այնպիսիները մէկղի թողուն իրենց գիտցածները և առաջնորդուին հոգևոր պաշտօնեայի ողջմտութեանը, որ գիտէ թէ ի՞նչ կ՚ընէ կամ ի՞նչ պէտք է ընել:

Ես դատելով Ամերիկայի մէջ իմ տեսածներէն և լսածներէն, խորհուրդ կուտամ մեր Եկեղեցւոյ ժողովուրդին, որ Նշանտուքի գեղեցկութիւնը չաւրեն գիշերները լուսցնելով կերուխումի և թիւրքերէն երգերու ժխորին մէջ:

Վասն զի Նշանօրհնէքը երկար կամ կարճ արարողութեամբ կատարուի, տարբերութիւն չընէր, եթէ աղօթքն ու օրհնութիւնը հոգևոր պաշտօնեային մեկնումէն ետքը պիտի կորսնցնեն իրենց ազդեցութիւնն ու օծութիւնը այդ գիշերային հաւաքոյթներու գեղծումներուն մէջ:

Ես կը փափաքէի, որ մեր հոգևոր պաշտօնեաներ Նշանտուքի առթիւ, իրենց աղօթքէն յառաջ կարդային Ա. Կրնթ. ԺԳ. 1-8 հատուածը, որու ներշնչման պէտք ունին ամուսնական կեանքին պատրաստուողներ մանաւանդ, և մենք ամէնքս ազգովին առհասարակ:

1918 Յունիս 18 ԲԱԲԳԷՆ ԵՊԻՍԿՈՊՈՍ

Պօսթոն



## ՔԱԼԻՖՕՐՆԻՈՅ ԱՌԱՋՆՈՐԴՈՒԹԻՒՆԸ

Քալիֆօրնիոյ Առաջնորդութեան մասին Պատգամաւորական Ժողովի գործունէութեան պատմութիւնը լիովին ներկայացնելու համար մեր ընթերցողներուն, կը հրատարակենք նաև հետևեալ թղթակցութիւնները:

* * *

Գերապատիւ Տ. Արսէն Ծ. Վ. Վեհունի, Առաջնորդ Հայոց Ամերիկայի, յՈւստըր

Քալիֆօրնիա նահանգի կամ առհասարակ Արևմտեան նահանգներու մէջ ցրուած Հայ գաղութին վիճակը ծանօթ է ձեզի: Այս կողմերու Հայք հետզհետէ տեղաւորուելու և շատնալու վրայ են, այնպէս որ անոնց կրօնական, կրթական, ազգային և այլ պէտքերն ալ նոյն համեմատութեամբ սկսած են շատնալ, որոնց լրջամիտ խնամածութիւնն ու հոգացողութիւնը կը պահանջեն անմիջական հըսկողութիւն և կարգադրութիւն տեղւոյն վրայ:

Այս պէտքերն ու պահանջները շատոնց զգալի ըրած էին առանձին առաջնորդութեան մը հաստատութիւնը Քալիֆօրնիոյ մէջ, և վստահ ենք որ Ձեր

Գերապատուութիւնն ալ փորձառաբար գնահատած է այս կողմերու Հայոց բացառիկ պայմանները, թէ ո՛րչափ դժուար է 3500 մղոն հեռաւորութենէ մը առանձնել անոնց առաջնորդելու պատասխանատուութիւնը:

Գալիֆորնիոյ Հայերը նկատի առնելով իրաց վիճակը, իրենց ազգային և եկեղեցական ինքնուրոյնութեանը պահպանութիւնը ապահովելու նախանձախնդրութեամբ, որոշեցին ի գործ դնել իրենց վաղեմի ծրագիրը, հաստատելով իրենց առաջնորդութիւնը ուղղակի Մայր Աթոռոյ իրաւասութեան ներքև:

Եւ որովհետև Գալիֆորնիոյ Հայոց փափաքին իրականացումը և ծրագրին յաջողութեամբ պսակումը կախուած է Ն. Ս. Օծութեան Ամենայն Հայոց Վեհ. Հայրապետին հաճութենէն և վաւերացումէն, պարտք համարեցինք Նորին Վեհափառութեան Հայրապետական գահոյից առջև դնել մեր խնդիրքը, և այս նպատակաւ խմբագրեցինք ներփակեալ պաշտօնագիրը մեր Պատգամաւորական ժողովին մէջ, և որոշեցինք նոյն պաշտօնագիրը ղրկել Ձեր Գերապատուութեան, որպէս զի բարեհաճիք կարդալցայն, տեղեկանալ անոր բովանդակութեան և ապա հասցունել զայն Ն. Ս. Օծութեան ձեռքը, առանց յապաղման, ապահովագրեալ ծրարով, և ոյժ տալով մեր խնդրանքին կատարման,- ընդունիլ մեր անկեղծ շնորհակալութիւնները՝ Ձեր սիրայօժար միջնորդութեան համար:

Վստահ ենք որ Ձեր Գերապատուութիւնը պիտի բարեհաճի ըստ ամենայնի Թարգման հանդիսանալ մեր Վեհ. Հայրապետին մօտ՝ մեր որդիական խորին զգացումներուն և շեշտել մեր խնդիրքը գնահատելով անոր կարևորութիւնը:

Շատ երախտապարտ պիտի մնանք Ձեր Գերապատուութեան, եթէ հաճիք մեզ իմացնել թէ մեր առ Ն. Ս. Օծութեան ուղղեալ ներփակ պաշտօնագիրն յանձնուած է նամակատուն ապահովագրեալ ծրարով:

Մնամք խորին յարգանօք

Անդամք Պատգամաւորական ժողովոյ

Գալիֆորնիոյ Հայց. Եկեղեցւոյ

1917 Փետր. 11

Ատենապետ՝ Ս. Վ. ՄԵԼՔՈՆԵԱՆ

Ատենադպիր՝ Մ. ԽՈԼԻԿԵԱՆ

## ՊԱՏԱՍԽԱՆ

Ուստըր, Մարտ 3, 1917

Պատ. Անդամք Պատգամաւորական ժողովոյ
Գալիֆորնիոյ Հայաստ. Առաքել. Եկեղեց.
ի Ֆրէզնօ

Կրօնական ժողովը նկատի առաւ իր Փետր. 19ի և Մարտ 1ի երկու նիստերուն մէջ՝ Միացեալ Նահանգաց արևմտեան Հայ գաղթականութեան յատուկ անջատ առաջնորդութեան համար ձեր առ Ամենայն Հայոց Վեհափառ Հայրապետն ուղղեալ Փետր. 11 թ. պաշտօնագիրը, և իր տեսութիւններուն հետ մէկտեղ յղեց Ն. Ս. Օծութեան՝

Զայս հաղորդելով Ձեզ ի գիտութիւն,

Մնամք աղօթարար

Ի Դիմաց Կրօնական ժողովոյ

Նախագահ և Առաջնորդ Ամերիկահայոց

ԱՐՍԷՆ Վ. ՎԵՀՈՒՆԻ

Ատենապետ՝ ՏՐԻԲՈՆ Վ. ՊԻԾԱԿԵԱՆ

Ատենադպիր՝ ԷԻՐԱՅՐ Ծ. Վ. ՄԱՐԳԱՐԵԱՆ

## ԽՄԲԱԳՐՈՒԹԵԱՆ ԿՈՂՄԷՆ

Առաջնորդական Տեղապահ Գերապատիւ Տ. Շահէ Ծ. Վարդապետի յանձնարարութեամբ «Էջմիածին» ղրկեցինք Արևելեան եկեղեցիներու բոլորՀոգաբարձութեանց: Միայն անհատական ջանքերով սկսուած և յառաջ տարուած այս համեստ ձեռնարկը, որուն նպատակն է միայն և միմիայն Ամերիկահայ կրօնական կեանքին մէջ զգալի պէտքի մը գոհացում տալ: Եթէ քաջալերութիւն գտնէ անիկա, կարելի է մնայուն հրատարակութիւն մը ընել: Եթէ Գալիֆորնիայէն դուրս, Արևելեան իւրաքանչիւր եկեղեցւոյ մէջ՝ միջին հաշւով՝ յիսուն ընթերցող միայն ունենանք, գործը ինքնին ապահովուած կըլլայ, և ընթերցողներու աճման համեմատութեամբ թերթն ալ կըստուարանայ և տևական կը դառնայ:

Այս օգտակար և բարի նպատակին մէջ մեր ջանքերը արդիւնաւորելու համար, Ամերիկահայ Եկեղեցեաց բոլոր արժանայարգ հովիւներուն և պատուարժան Հոգաբարձութեանց անկեղծ և համակիր աջակցութեան կը կարօտինք և վստահ ենք թէ չպիտի զլանան անոնք:

* * *

## ՄԱՀԱԳՈՅԺ

* * *

Գ. Սրապիոն Մելքոնեան, որդին հանգուցեալ Ահարոն Վարդ. Սահրոյեանի, որ տեղւոյս գաղթականութեան հին դէմքերէն էր, յետ հնգօրեայ հիւանդութեան, աւանդեց իր հոգին, իր այգիի բնակարանին մէջ, Յուլիս 26ին:

Հանգուցեալոյն Ֆրէզնոյի մէջ անցուցած երկար կեանքը նուիրուած մը եղած է Ազգային և Եկեղեցական գործերու: Այրած և արդի նորաշէն Եկեղեցիներու շինութեան ատեն նպաստած է դրամով, ժամանակով և աշխատութեամբ, և Եկեղեցւոյ բոլոր վարչական կազմակերպութեանց մէջ ալ միշտ գործօն դեր ունեցած է, ու մեռած պահուն ատենապետն էր Քալիֆօրնիոյ Առաջնորդութեան Պատգամաւորական Ժողովին: Իբրև պահպանողական և բարեխառն բնաւորութեան տէր, առ հասարակ սիրուած ու յարգուած էր ան: Իր մահը զգալի պակաս մը կը թողու տեղւոյս Ազգ. Եկեղեցական կեանքին մէջ:

«Էջմիածին» երկնային հանգիստ կը մաղթէ անոր յոգնավաստակ հոգւոյն, և մխիթարութիւն իր այրիացեալ բարի տիկնոջ, հինգ զաւակներուն, երեք հարսերուն, երկու թոռներուն, վշտահար զոքանչ մայրիկին և բոլոր սգակիր պարագայից:

## ԵԿԵՂԵՑԻՈՅՍ ՀՕՎԻՒԸ

### Զարհուրելի Արկածի մը Ականատես

* * *

Յուլիս 24ին, երբ շոգեկառքով Եդեմէն կը վերադառնայինք, Լօն Սթարի կայարանին մօտիկ, շոգեկառքը բաղխեցաւ օթոմոպիլի մը որ ծառախիտ ճամբայէ մը յառաջանալով գծէն կուզէր անցնիլ, և վարիչը Յարութիւն Փուջիկեան չէր կրցած զգալ շոգեկառքին սուրչաւ գալը: Կառախումբը կեցաւ իսկոյն. վար իջնելով ականատես եղանք սարսափելի տեսարանին: Օթոմոպիլը ջարդ ու փշուր եղած, Յարութիւնը կռնակին վրայ արիւններու մէջ ինկած զգայազուրկ, երկու եղբայրները և ուրիշ երկու հոգի՝ անվնաս բայց խելայեղ վիճակի մատնուած: Ասոնք բոլորը Ֆրէզնօ բերուեցան, իսկ արկածեալը տարինք հիւանդանոց: Երեք ժամ վերջը Յարութիւն հոգին աւանդեց:

Այս ցաւալի դէպքը դէթ յուշարար ըլլար բոլոր անոնց որոնք օթոմոպիլ ունին:

## ԵԴԵՄԷՆ ԼՈՒՐԵՐ

Հոգաբարձութեան ատենապետ Գ. Նազարէթ Սփէնչեանի վայելուչ բնակարանը գիշեր ատեն բռնկելով ամբողջովին հրոյ ճարակ եղաւ: Գ. Սփէնչեան հազիւ իր կեանքը կրցաւ ազատել. Տիկինը արձակուրդի գնացած էր: Այս ցաւալի կորուստին համար մեր ցաւակցութիւնը կը յայտնենք Գ. Սպէնչեանի:

—Յուլիս 23ին տեղի ունեցաւ ամուսնութիւնը Գ. Յովհաննէս Նազարէթեանի ընդ Ագնիւ Նազարէթեանի, Լօս Անճէլըսէն: Պսակը օրհնեց Տէր Վարդան Ծ. Վարդապետ Գասպարեան, որ յարմար խրատական մը խօսեցաւ: Խօսեցան նաև Պատ. Օ. Պաղտասարեան և Գ. Ա. Առաքելեան, Լօս Անճէլըսէն:

Եդեմը հետզհետէ կ'աճի ու կը զարգանայ թէ՛ մշակութեամբ և թէ բնակչութեամբ, և իր անուան համապատասխան վիճակ մը կ'ստանայ:

## ՀԱՄԱԿՐԱԿԱՆ

Փրովիտէնս, Յուլիս 16, 1918

Գեր. Տ. Վարդան Ծ. Վ. Գասպարեան
Ֆրէզնօ

Շնորհակալութեամբ ստացայ ձեր հրատարակած «Էջմիածին» ամսաթերթի մինչ ցարդ հրատարակուած թիւերը:

«Էջմիածին» ամեն Հայու սրտին խօսող իր միստիկ անուան պէս ալ գեղեցիկ պարունակութիւն մը ունի: Ձեր այս ձեռնարկով, Սուրբ Հայր, խիստ զգալի պէտք մը կը լրացնէք, առիթը տալով կենդանի խօսքէն զրկուած Հայ ժողովուրդին, իր սրտին հոգեկան պապակը ձեր սիրուն «Էջմիածին»էն յագեցնելու. որուն համար ձեր ջանքերը մեծապէս գնահատելի և շնորհաւորելի են:

Խորին յարգանօք ձերդ
Նիկ. Թ. ԽԱՇՄԱՆԵԱՆ

## ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ԼՈՒՐԵՐ

* * *

Մահագրութիւն

Յովհաննէս Գայմագեան, Յուլիս 6
Ստեփան Սիմօնեան, Յուլիս 6
Մասիս Յակոբեան, Յուլիս 9
Յարութիւն Փուջիկեան, Յուլիս 27
Սրապիոն Մելքոնեան, Յուլիս 26



Նշանախօսութիւն

Յուլիս 6

Գրիգոր Թովմասեան
Հռիփսիմէ Քիւրքճեան

Ամուսնութիւն

Յուլիս 13

Յովհաննէս Շահզատէեան
Րօզի Մարաշլեան

Մկրտութիւն

Յուլիս 11

Վահան Արքահամեանի երախան Գէորգ

---

## ՄԵԶԻ ՂՐԿՈՒԱԾ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆՆԵՐ

* * *

1. «Ինչո՞ւ կը հակառակինք Հայերուս մէջ Ընկերվարութեան Փոփոխականութեան» Գրեց Մ. Մինասեան: Տպարան «Ազգ»ի, Պոսթըն:

2. «Ժողովածու», Ասպարէզ թերթի տասնամեակի առթիւ: Գրական, պատմական և բանաստեղծական աշխատութեանց ճոխ հատոր մըն է: Գին $1.25. «Ասպարէզ»ի տպարան, Ֆրէզնօ:

---

## —ՏՕՆԱՑՈՅՑ— —

ՕԳՈՍՏՈՍ

4. Կիր. ԲԿ. Զրդ զկնի Հոգեգալստեան: Բարեկենդան Վարդավառի:

10. Շբ. ԱԿ. Յիշատակ Տապանակին Հնոյ և տօն նորոյս Սրբոյ Եկեղեցւոյ: Նաւակատիք: Երեկոյին Նախատօնակ.

11. Կիր. ԲՁ. ՎԱՐԴԱՎԱՌ: Տօն Պայծառակերպութեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի Տաղաւար:

17. Շբ. ԱՁ. Տօն Եփեսոսի Սուրբ Ժողովոյն երկու հարիւր հայրապետացն:

18. Կիր. ԱԿ. Բրդ զկնի Վարդավառի: Բարեկենդան Աստուածածնի:

24. Շբ. ԳԿ. Նաւակատիք: Տօն Շողակաթին Սրբոյ Էջմիածնի: Երեկոյին Նախատօնակ:

25. Կիր. ԱՁ. ՏՕՆ ՎԵՐԱՓՈԽՄԱՆ Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻ: Տաղաւար: (Խաղողօրհնէք):

## ՊԱՇՏՕՆԱԿԱՆ

* * *

Հայ Ազգային Միութեան Կեդրոնական Մարմինը Ամերիկահայ գաղութին վիճակագրութիւնը պատրաստելու համար ընտրած է երեք անդամներէ բաղկացած յանձնախումբ մը, որուն անդամներն են՝ Յ. Գ. Գերմակեան, Տոքթ. Յ. Ծովիկեան և Խ. Գայըլսեան:

Ամերիկահայ հասարակութեան ամէն մէկ անհատէն և բոլոր հաստատութիւններէն, ինչպէս նաև Միութեանս մասնաճիւղերէն կը խնդրենք որ ամէն կարելի միջոցներով աջակցին վիճակագրական յանձնախմբին ստանձնած այս խիստ կարևոր ու դժուար գործին մէջ:

Յանձնախումբը գործի սկսած է արդէն և շուտով հարկ եղած հրահանգները կուտայ Հ. Ա. Միութեան մասնաճիւղերուն և հասարակութեան:

Ի դիմաց Հայ Ազգ. Միութեան Կեդ. Մարմ.

Ատենապետ՝ Մ. ՍԸՎԱՁԼԸ

Ատենադպիր՝ Մ. ՀԱՄԲԱՐՁՈՒՄԵԱՆ

Յուլիս 10, 1918

---

## ՎԻՃԱԿԱԳՐՈՒԹԻՒՆ

(Մարդահամար)

ԱՄԵՐԻԿԱՀԱՅ ՀԱՍԱՐԱԿՈՒԹԵԱՆ

Յարգելի հայրենակիցներ,

ՀԱՅ ԱԶԳԱՅԻՆ ՄԻՈՒԹԵԱՆ ԿԵԴՐՈՆԱԿԱՆ ՄԱՐՄՆԻ որոշումով Վիճակագրական Յանձնախումբս Ամերիկահայութեան Մարդահամարի խիստ կարևոր ու դժուար գործին սկսած է:

Այս երկտող պաշտօնագրով կը խնդրենք իւրաքանչիւր հայ անհատէ և կազմակերպութենէ, որ աջակցին մեզի ամէն կերպով, որ կրնան:

Մարդահամարի գործը կը կազմակերպուի Հայ Ազգ. Միութեան Մասնաճիւղերուն միջոցով. բայց այն վայրերուն մէջ ուր Հայ Ազգ. Միութիւնը մասնաճիւղեր չունի, անհատներ կամ ուրիշ կազմակերպութիւններ ու մարմիններ յարաբերութեան մտնելու են Վիճակագրական Յանձնախումբիս հետ՝ մեզի գրելով ապահով և մնայուն հասցէ մը՝ միշտ նախընտրելով տան հասցէ փոխանակ Փ. Օ. Պօքսի և կամ ԵՐԿՈՒՔԸ միասին:

ՍՏԻՊՈՂԱԲԱՐ կը խնդրենք իւրաքանչիւր հայ գաղութի մէջ գոյութիւն ունեցող հասարակական բնոյթ ունեցող բոլոր հաստատութիւններէն —եկեղեցական, բարեգործական, կրթական, որբախնամ, քաղաքական մարմիններ և ակումբներ— որ իրենց հասցէները ղրկեն մեզ ի հարկին յարա-

բերութիւն պահելու համար իրենց հետ։ Հասցէները ղրկուելու են մեզի այդ նպատակով մասնաւորապէս պատրաստուած քարդերու վրայ, որոնք կարելի է առնել ոեւէ քաղաքի Հ. Ա. Միութեան մասնաճիւղէն, և կամ դիմելով Յանձնախումբիս հասցէին.—

Արմինիըն Նէշընըլ Իւնիըն ավ Ամերիկա,
401 Օլտ Սութհ Պիլտինկ, Պօսթըն, Մէսս։

Վիճակագրական գործին վերաբերեալ ոեւէ նամակի վրայ գրուելու է Վիճակագրական Յանձնախումբին, եթէ այդ նպատակով յատկապէս պատրաստուած պահարաններ չկան ձեռքի տակ։

Յարգանքներով
Հ. Ա. Մ. ՎԻՃԱԿԱԳՐԱԿԱՆ ՅԱՆՁՆԱԽՈՒՄԲ

ԱՆԴԱՄՔ.— Յ. Գ. Դերձակեան, Տոքթ. Յ. Ծովիկեան, Խ. Գալուստեան։

## ԼՕՍ ԱՆՃԷԼԸՍԷՆ ԼՈՒՐԵՐ

Քաղաքիս Հայ Առաքելական Եկեղեցւոյ Տիկիններու Միութեանը դաշտագնացութիւնը տեղի ունեցաւ Սիքըմոր Փարքին մէջ։ Ներկայ էր երկսեռ խուռն բազմութիւն մը։ Հոգեւոր Հովիւ Արժանապատիւ Տ. Ատոմ Քահանայ օրուան պատշաճ քարոզ մը խօսեցաւ. ժողովուրդը միահամուռ ազգային երգեր երգեցին։ Ատենախօսեց Գ. Ա. Առաքելեան։ Ամերիկեան և Հայկական դրօշակներու հետ հայ զինուորի մը յայտնութիւնը խանդավառեց ամբողջ ժողովուրդը։

Շնորհաւորելի են Եկ. Տիկնանց աշխատութիւնը, ինչպէս նաև Տէր Ատոմ Քահանայի ու Հոգաբարձութեան ջանքերը։ Սակայն այսպիսի առիթներու մէջ հոգատար ըլլալու են Եկեղեցւոյ անդամաց թուոյն վրայ յաւելումներ ընելու։

—Հ. Ա. Միութեան տեղւոյս մասնաճիւղը հրապարակային ժողով մը կը պատրաստէ, ժողովուրդին աւելի ծանօթացնելու համար նոյն Միութիւնը։

—Յուլիս 13ին, Տէր և Տիկին Նազարէթ Ճուլիկեանի տունը օրհնուեցաւ անդրանիկ մանչ զաւակով մը։ Մայրը, Տիկին Ատէլ, որ հիւանդանոցին մէջ կը խնամուէր, տուն վերադարձաւ։

## ԿԻՐԱԿՆՕՐԵԱՅ ԴՊՐՈՑԻ ԱՇԱԿԵՐՏՆԵՐՈՒՆ

Կիրակնօրեայ Դպրոցի աշակերտները ինչպէս կրնան մէյմէկ զէնք նուիրել մեզի համար կռուող Հայ և Ամերիկեան զինուորներուն։

— Մէյմէկ Պատերազմական Խնայողութեան Թղթադրոշմի տետրակ գնելով։

## ՔԱԼԻՖՕՐՆԻԱ ՆՈՐ ԵԿՈՂՆԵՐՈՒՆ

Արեւելեան նահանգներէն մեծ թուով Հայեր եկած են Քալիֆօրնիա գալ ու հաստատուիլ այս շրջանակին մէջ՝ լսած ըլլալով այգեգործութեան մէջ առաջ եկած յաջողութեան մասին։ Մենք չենք գիտեր թէ որչափ շիտակ է այսպիսիներու ընթացքը, բայց կը փափաքինք գիտնալ անոնց հաստատուած տեղերը ու ծանօթանալ անոնց հետ։

## ԼՈՒՐ ՏՈՒՐ ԵԿԵՂԵՑՒՈՅ ՀՈՎՈՒԻՆ

Երբ տունիդ կամ ծանօթներուդ մէջ հիւանդ կայ։

Երբ գիտես թէ բանտարկեալ մը կայ։
Երբ գիտես թէ խռովեալներ կան։
Երբ գիտես թէ նորեկ կայ։
Տեղափոխութեան պարագային՝ նոր հասցէդ։

Բնակարանի հասցէ՝ 2143 Վէնթուրա ավնիւ,—
—Թէլէֆօն 4138- W—

## ԷՋՄԻԱԾԻՆ

Կրօնա-Բարոյական Ամսաթերթ

Հրատարակութիւն՝
ՎԱՐԴԱՆ Ծ. ՎԱՐԴԱՊԵՏ ԳԱՍՊԱՐԵԱՆԻ

Բաժանորդագին՝ տարեկան մէկ տոլար

Նամակ, ծրար են. ղրկուելու են վարի հասցէով։ Բաժանորդագինը կանխիկ է։

## ՏԱՒՐՈՍ

ԱԶԱՏ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

Բաժանորդութեան Պայմաններ

| | |
|---|---|
| Տարեկան | Երեք տոլար |
| Վեցամսեայ | Մէկ ու կէս տոլար |

Բաժանորդագրութիւնք կըսկսին իւրաքանչիւր ամսոյ սկիզբէն. ամսոյն վերջը բաժանորդագրուողները կ՚ըստանան նոյն ամսուան ամբողջ թիւերը։

Հասցէն՝ Տաւրոս Փըպլիշինկ Քմբնի,
Օլտ Սաւթհ Պիլտինկ, Պօսթըն
Սենեակ 627